# ԱԳԻՏԱՏՈՐԻ
## ԲԼՈԿՆՈՏ





ՍԵՊՏԵՄԲԵՐ

**18**

1963

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



СОДЕРЖАНИЕ



Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

Адрес редакции—Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 18
ՍԵՊՏԵՄԲԵՐ
1963

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՄԵԾ ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆԵՐԻ ՏԱՐԻ՛ՆԵՐ

Եթե Կալինովկայի բնակիչներից որևէ մեկը 10 տարի առաջ գյուղից հեռանար և վերադառնար այժմ, ապա հարազատ վայրերը չէր ճանաչի։ Այնտեղ, ուր մի ժամանակ ծղոտե տանիքով ծածկված խրճիթներ էին, շարքով կանգնած են բարեկարգ տները՝ պատշգամբներով, ջրմուղով, կոյուղով։ Վերջին տարիներս կառուցվել են նոր փողոց՝ գյուղատնտեսության մասնագետների բազմահարկ բնակելի շենքերով, գիշերօթիկ դպրոց, կուլտուրայի տուն, ճաշարան, կենցաղային սպասարկման արհեստանոց... Ո՞ր մեկն ասենք։

Փոխվել է նաև կոլտնտեսականը։ Նա փոխվել է ոչ միայն արտաքուստ, այլև հոգեպես։ Այժմ նա կոմունիզմի՝ համարձակորեն առաջ նայող շինարար է, նոր կյանքի կառուցողը։

1953 թվականին Կալինովկայի կոլտնտեսությունը ետ էր մնում։ Այն ժամանակ հեկտարից ստացվում էր 7,4 ցենտներ հացահատիկ, ֆերմայում կար 47 կով։ Հողատարածության 100 հեկտարի դիմաց արտադրվում էր 8,5 ցենտներ միս՝ կենդանի քաշով և 42 ցենտներ կաթ։ Տնտեսությունն ըստ էության նատուրալ բնույթ էր կրում. ինչ արտադրում էինք, այն էլ սպառում էինք։

Գյուղատնտեսական արտադրության վերելքի ուղին բացեցին ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1953 թ.) պլենումի պատմական որոշումները։ 1954 թվականին մեր կոլտնտեսություն այցելեց Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը։ Նա մեզ խորհուրդ տվեց՝ իսկականից ձեռ-

նամուխ եղեք կանեփի աճեցմանը. այդ կուլտուրայից ստացեք դրամական լավ եկամուտներ, իսկ այդտեղից ձեր գործերը հաջող կգնան, կզարգանան տնտեսության մյուս ճյուղերը։ Ամբողջ եռանդով ձեռնամուխ եղեք եգիպտացորենի աճեցմանը, և դուք կստեղծեք կերի առատություն, ձեզ մոտ հաջողություն կունենա անասնաբուծությունը։ Դուք զուր տեղն եք խոնավ գոտում մաքուր ցելեր պահում, նպատակահարմար է այդտեղ ցանել եգիպտացորեն և այլ կուլտուրաներ։

Մենք այդպես էլ վարվեցինք։ Կանեփի բերքատվությունը բարձրացնելու համար կոլտնտեսականներն այդ կուլտուրային հատկացրին իրենց տնամերձ հողամասերը, պարարտացրին կոլտնտեսային հողը։ Եվ անմիջապես լավ բերք ստացվեց։ 1954 թվականին մենք առաջին անգամ ցանեցինք 49 հեկտար եգիպտացորեն, և յուրաքանչյուր հեկտարը տվեց 312 ցենտներ կանաչ զանգված՝ կաթնամոմային հասունության կողրերով։

Այդ առաջին հաջողությունները թևավորեցին։ Այնուհետև, ստանալով արտադրությունը մեր հայեցողությամբ պլանավորելու հնարավորություն, մենք սկսեցինք կատարելագործել ցանքատարածությունների կառուցվածքը։ 1955 թվականից հրաժարվեցինք մաքուր ցելերից։ Զբաղված ցելերը տալիս են տնտեսությունում արտադրվող բոլոր կերերի մեկ քառորդը։

Փոփոխելով ցանքատարածությունների կառուցվածքը, կոլտնտեսությունն անդուլ կերպով արմատավորել և արմատավորում է տնտեսությունը վարելու պրոգրեսիվ եղանակները, լայնորեն օգտագործում է առաջավոր գիտության ու պրակտիկայի նվաճումները։ Մեզ մոտ գերակշռում են քիչ բերքատու անտառահողերը, պոդզոլային սևահողը։ Բարձր բերք ստանալու համար հարկավոր էր առաջին հերթին լավ պարարտացնել հողը։ Մենք այդ հնարավորությունը ստացանք անասունների ու թռչունների գլխաքանակի աճի շնորհիվ. ուժեղացավ գոմաղբի կուտակումը։ Սկսեցինք դաշտերին տալ նաև տորֆ, հանքային ու բակտերիալ պարարտանյութեր։ Անցյալ տարի մենք վարելահողերի յուրաքանչյուր հեկտարին միջին հաշվով տվեցինք 10 տոննա օրգանական պարարտանյութ։

Լայնորեն կիրառում ենք նաև այլ ագրոտեխնիկական միջոցառումներ։ Ցանքից առաջ սերմերը ախտահանում ենք գրանոզանով, մշակում ենք ազոտաբակտերինով և ֆոսֆորաբակտերինով։ Բերքատվությունը





մեծ չափով բարձրացավ ոլոռն ու մյուս լոբազգիները մոլիբդենով մշակելու, եգիպտացորենի սերմերը միկրոտարրերի լուծույթների մեջ թրջելու շնորհիվ։

Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը մեզ խորհուրդ տվեց արմատավորել գյուղատնտեսական կուլտուրաների լավագույն, հեռանկարային սորտերը։ Այդ ուղղությամբ արդեն քիչ բան չի արվել։ Օրինակ, փորձարկում ենք ցորենի «միրոնովսկայա—808», «բեզոստայա—1», «ֆրիո», «կունցևսկայա—45», «ալբիդում—145» սորտերը և այլն։ Կոլտնտեսությունում արագորեն զարգանում է անասնաբուծությունը։ Այժմ մենք ունենք 1.200 կով, այսինքն՝ հողատարածության 100 հեկտարին ընկնում է 24 գլուխ։

Անասնաբուծությունը կերերով լիուլի ապահովելու համար, մենք տարեցտարի ավելացնում ենք կաբևորագույն կերակուլտուրաների ցանքատարածությունները և բարձրացնում դրանց բերքատվությունը, կիրառում ենք կերի պահպանման ու պատրաստման առավել պրոգրեսիվ եղանակներ։ Շաքարի ճակնդեղի մի մասը սիլոսացնում ենք հատուկ սարքավորված մեքենայացված կետում։ Խոզերի ու խոշոր եղջերավոր անասունների համար լավ կեր է կոմբինացված սիլոսը, որից ամեն տարի պատրաստում ենք 2,5—3 հազար տոննա։

Տնտեսության վերելքի պայմաններից մեկն է դարձել կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության սկզբունքը։ Այդ գործում կարևոր դեր կատարեց անցումը աշխատանքի դրամական վարձատրության։ Մանրամասնությունները չպատմելով ասեմ, որ կոլտնտեսականի աշխատանքը մեզ մոտ վարձատրվում է նրա քանակին, որակին և արտադրվող արտադրանքին խիստ համապատասխան։ Լավ խթան հանդիսացավ լրացուցիչ վարձատրությունը։

Նախկին Կալինովկայում մեծ արգելք էր կոլտնտեսականների աշխատանքային կարգապահության ցածր մակարդակը։ Նրանց կյանքի հիմնական աղբյուրն էին տնամերձ հողերը։ Կոլտնտեսության վարչությունը և պարտիական կազմակերպությունը շատ աշխատանք կատարեցին մասնավոր սեփականատիրական տենդենցները հաղթահարելու համար։ Դա տվեց հիանալի պտուղներ։ Հենց որ հանրային տնտեսությունը դարձավ արտելի անդամների նյութական ապահովման գլխավոր աղբյուրը, նրանք կոլտնտեսությանը վաճառեցին սեփական կովերը, կրճատեցին տնամերձ հողերը։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովի խորհրդով կոլտնտեսությունն ընդլայնեց հանրային բանջարանոցը և այժմ կոլտնտեսականներին ամեն տեսակի բանջարեղեն է մատակարարում ինքնարժեքով։

Կատարելով Նիկիտա Սերգեևիչի բարի խորհուրդները, Կալինովկան 1958 թվականին միավորվեց Ժեղենովկա գյուղի ետ մնացող կոլտնտեսության, իսկ 1961 թվականին՝ «Իլյիչի հիշատակը» արտելի հետ։ Այժմ մեր կոլտնտեսությունն ունի մոտ 6 հազար հեկտար հող, այդ թվում 5.153 հեկտար վարելահող։ Տնտեսությունն ընդլայնվել է մի քանի անգամ։ Այն շարունակում է վստահորեն առաջ ընթանալ։ Նախկին ետ մնացող կոլտնտեսությունների բազայի վրա ստեղծված երկու արտադրական տեղամասերը արագորեն հասան Կալինովկայի մակարդակին։

Այստեղ վերջին դերը չխաղաց արտադրության վճռական տեղամասերում աշխատելու համար գործիմաց մարդկանց առաջքաշումը։

Մենք մեզ համար լավ փոխարինողներ ենք պատրաստում։ Մարիա Պոստովան միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո երկու տարի աշխատեց որպես կթվորուհի և հիանալի ցուցանիշների հասավ։ Մենք նրան ուսման ուղարկեցինք Կուրսկի գյուղատնտեսական ինստիտուտ։ Մեր կոլտնտեսությունում նա անցկացրեց իր պրակտիկան, իսկ այժմ, ուսումն ավարտելուց հետո, նշանակվել է զոոտեխնիկ։ Գյուղատնտեսական ուսումնական հաստատություններում սովորում են կոլտնտեսուհիներ Վալենտինա Ալյաբևան, Լիդիա Խուդյակովան և ուրիշներ։

Բազմաթիվ տրակտորիստներ ու մասսայական որակավորման այլ մասնագետներ ենք պատրաստել մեքենայացման ուսումնարաններում և կարճատև դասընթացներում։ Միաժամանակ մեծ ուշադրություն ենք դարձնում բոլոր կոլտնտեսականների որակավորման բարձրացմանը։ Արտելում կազմակերպվել են ագրոտեխնիկական դասընթացներ, որտեղ ուսուցումը տեղի է ունենում մեխանիզատորական ընդհանուր ուսուցման ծրագրով։

Կալինովկացիները ջանքեր չեն խնայում իրենց փորձը ուրիշ տնտեսությունների հաղորդելու համար։ Մեզ մոտ էքսկուրսանտներ են եղել Ռուսաստանի Ֆեդերացիայի շատ երկրամասերից ու մարզերից, Ուկրաինայից, Բելոռուսիայից, Ղազախստանից, Վրաստանից



ու եղբայրական այլ ռեսպուբլիկաներից։ Մեր մասնագետներն աշխատել են որքան կարելի է նրանց հանգամանորեն պատմել կոլտնտեսային գործերի մասին։ Բայց հատկապես ձգտում ենք օգնել մեր մարզի, առաջին հերթին Դմիտրիևսկի արտադրական վարչության ետ մնացող կոլտնտեսություններին։ Օրինակ, մեր մասնագետները բազմիցս եղել են Սվերդլովի անվան կոլտնտեսությունում։ Նրանք այդտեղի ղեկավարներին ու մասնագետներին օգնել են մշակելու և կենսագործելու տնտեսության ետ մնալը հաղթահարելու նպատակին ուղղված մի շարք միջոցառումներ։ Ենթաշեֆ տնտեսություններին սորտային սերմացու ենք տվել։ Եվ ահա արդյունքը. այս տարի, չնայած երաշտին, Սվերդլովի անվան կոլտնտեսությունն ավելի լավ արդյունքների է հասել, քան 1962 թվականին, որը բերրի տարի էր։

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումից հետո անցած 10 տարում մեր կոլտնտեսությունը մեծ քայլ է կատարել գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու ուղղությամբ։ Դա երևում է հետևյալ աղյուսակից.

| | 1953 թ. | 1962 թ. | 1962 թ. 1953 թվականի համեմատությամբ |
|---|---|---|---|
| Մսի արտադրությունը սպանդանոցային քաշով (ցենտներներով)՝ ընդամենը . . . . . . . . . | 202 | 4.313 | 21 անգամ |
| 100 հեկտար հողատարածության դիմաց . . . . . . . . . | 4,3 | 90,1 | 20 անգամ |
| Կաթի արտադրությունը (ցենտներներով)՝ ընդամենը . . . . . . | 886 | 27.046 | 30 անգամ |
| 100 հեկտար հողատարածության դիմաց . . . . . . . . . | 19,3 | 507,3 | 26 անգամ |
| Հացահատիկի արտադրությունը (ցենտներներով) . . . . . . | 5.583 | 49.995 | 9 անգամ |
| Մեկ կովից ստացված կաթը (լիտրերով) . . . . . . . . . | 933 | 2.347 | 2,5 անգամ |
| Մեկ հեկտարից ստացված հացահատիկային կուլտուրաների բերքը . . | 7,4 | 24,1 | 3,2 անգամ |

1953 թվականի տվյալները հացահատիկային կուլտուրաների բերքից բացի, ոչ թե նախկին Կալինովկային են, այլ խոշորացված տնտեսությանը։

Չնայած անբարենպաստ կլիմայական պայմաններին, այս տարի կոլտնտեսությանը հաջողվեց աճեցնել համեմատաբար ոչ վատ բերք։ Յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 22 ցենտներ հացահատիկ՝ առանց եգիպտացորենի, կստանանք 550 ցենտներ կանաչ զանգված և 300 ցենտներ շաքարի ճակնդեղ։ Նախատեսել ենք հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց տարեկան ստանալ 600 ցենտներ կաթ և 105 ցենտներ միս՝ սպանդանոցային քաշով։

Պլանով նախատեսված 612 ցենտների դիմաց կոլտնտեսությունը պետությանը վաճառեց 1.421 ցենտներ միս և 4.090 ցենտների դիմաց՝ 7.848 ցենտներ կաթ։

Այս ցուցանիշները անցյալի համեմատությամբ, իհարկե, վատ չեն։ Բայց հետագայում դրանք մեզ բավարարել չեն կարող։ Դեռ պետք է լուծենք արտադրության, կենցաղի ու կուլտուրայի մի շարք կարևորագույն հարցեր։

Կատարելով ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումները, կոմունիստական շինարարության ծրագիրը, պարտիական կազմակերպությունը, վարչությունը և բոլոր կոլտնտեսականները հաստատակամորեն պայքարում են, որպեսզի կատարեն յոթնամյակի վերջին տարվա համար ստանձնած պարտավորությունները։ Իսկ այդ պարտավորությունները բարձր են։

Կալինովկայում իր համագյուղացիների հետ Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովի զրույցի ժամանակ (1962 թվականի հուլիսին) մենք հաստատ խոսք տվեցինք՝ 1965 թվականի վերջին հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց արտադրել 150 ցենտներ միս՝ սպանդանոցային քաշով և հազար ցենտներ կաթ։

Այս խնդիրը կատարելու և մսի արտադրությամբ երրորդ բնագիծը դուրս գալու համար, կոլտնտեսությունը պետք է ստանա գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բարձր կայուն բերք՝ հեկտարից 38—40 ցենտներ հացահատիկ, 450—500 ցենտներ շաքարի ճակնդեղ ու գազար, 750—800 ցենտներ սիլոսացու եգիպտացորեն, 70—75 ցենտներ երեքնուկի խոտ։

Տնտեսությունը կունենա 2.200 կով, 25 հազար ածան հավ, ամեն տարի պետությանը կվաճառենք 7 հազար խոզ։



Մենք մեր առջև խնդիր ենք դնում՝ մինչև յոթնամյակի վերջը տարեկան ստանալ 3 միլիոն ռուբլի դրամական եկամուտ։ Այդ բանին կհասնենք գլխավորապես կանեփի, այգու, բանջարանոցի և անասնաբուծության հաշվին։ Այդ ժամանակ հնարավորություն կունենանք ամեն տարի շահագործման հանձնել 32 բնակարանանոց երկու շենք, որոնցում կոլտնտեսականները կապրեն կոմունալ պայմաններով։ Մենք կիրականացնենք մեր այն երազանքը, որ 10—12 տարում բոլոր կոլտնտեսականներին փոխադրենք քաղաքատիպ ավան բարեկարգ բնակարաններում կենտրոնական ջեռուցմամբ, ջրմուղով, կոյուղով և այլ հարմարություններով։

Առաջընթացը կապված է հանձնարարված գործը գիտակցաբար, գործիմացությամբ կատարող մարդկանց, կադրերի հետ։ Այդպիսի կադրեր տնտեսությունն ունի, և մենք ամբողջովին դրանց վրա ենք հենվում։

Այս աշխատանքների և արտելի շատ ուրիշ անդամների ձեռքերով ավելի կբարձրացվի տնտեսությունը վարելու ագրոզոոտեխնիկական մակարդակը, կոմպլեքսային մեքենայացման կենթարկվեն գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերը, ավելի կբարձրացվի աշխատանքի արտադրողականությունը։

Վ. ԳՐԱՉԵՎ

Կուրսկի մարզի Դմիտրևսկի արտադրական վարչության Կալինովկա գյուղի կոլտնտեսության նախագահ

(«Սելսկայա ժիզն» 3 սեպտեմբերի, 1963 թ.)

ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ

Հարգելի ագիտատորնե՛ր, մեր երկրում մեծ թափ է ստացել ետ մնացող կոլտնտեսությունները առաջավոր կոլտնտեսություններին հասցնելու շարժումը։ Խնդիր է դրվում առաջավոր տնտեսությունների փորձը դարձնել բոլորի սեփականությունը։ Այդ նպատակով տպագրում ենք Կուրսկի մարզի Դմիտրևսկի արտադրական վարչության Կալինովկա գյուղի կոլտնտեսության նախագահ Վ. Գրաչևի հոդվածը։ Խմբագրությունը խորհուրդ է տալիս այդ առաջավոր փորձը լայնորեն մասսայականացնել։

# ԱԳԻՏԿՈՒԼՏԲՐԻԳԱԴԸ ՅԱՅԼԱՂՆԵՐՈՒՄ

Իջևանի կուլտուրայի տան ագիտկուլտբրիգադը, որի կազմում ընդգրկված են բանվորներ, բարձր դասարանների աշակերտներ, գրական ստուդիայի երիտասարդ ստեղծագործողներ, միջշրջանային «Լենինյան ուղիով» թերթի և կուլտուրայի տան աշխատակիցներ, թվով 21 հոգի, օրինակելի աշխատանք է կատարում անասնապահների շրջանում։ Ագիտկուլտբրիգադը անասնապահների համար կազմակերպել է հետաքրքիր զրույցներ ու դասախոսություններ ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի, միջազգային դրության, բժշկության, գիտության և այլ հարցերի մասին։ Բրիգադը արոտավայրերում աշխատող կոլտնտեսականների համար կազմակերպում է նաև հարց ու պատասխանի ցերեկույթներ, գեղարվեստական ինքնագործունեության համերգներ, լույս է ընծայում «Կայծակ» թերթիկ, ցուցադրում է ֆոտոստենդ և այլն։ Վերջերս բրիգադը հատուկ ավտոբուսով, որը զարդարված էր նկարներով ու լոզունգներով, մեկնեց Գյուլումջան կոչվող գեղատեսիլ վայրը, որտեղ իրենց յայլաղային շրջանն են անցկացնում Լուսաձորի, Խաշթառակի, Աչաջրի և այլ գյուղերի անասնապահական ֆերմաները։ Անասնապահները հաղթահարելով այս տարվա հորդ անձրևների պատճառած դժվարությունները, պայքարում են ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու և Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարը աշխատանքային նոր հաջողություններով նշանավորելու համար։

Ագիտկուլտբրիգադի անդամները իրենց հետ տանում էին թարմ թերթեր, գեղարվեստական գրականություն, անասնապահության վերաբերյալ հանրամատչելի գրքույկներ, շախմատ, շաշկի և այլն։

Քսանմեկ հոգուց բաղկացած ագիտկուլտբրիգադը առաջին երկու օրը անցկացրեց Խաշթառակի կոլտնտեսության անասնապահների մոտ։ Վաղ առավոտյան ագիտկուլտբրիգադի անդամները օգնեցին կթվորներին կիթը շուտ ավարտելու համար։ Կթից հետո կազմակերպվեց հարց ու պատասխանի ցերեկույթ, որից անասնապահները շատ գոհ մնացին։ Նրանց վրա հատկապես մեծ տպավորություն թողեց ագիտկուլտբրիգադի ան-



դամ, վերջերս հայրենիք վերադարձած, Իջևանի ավտովերանորոգման արհեստանոցի բանվոր Ժիրայր Մայիլյանի զրույցը։ Նա անկեղծ, համոզիչ ու կենդանի լեզվով պատմեց իր տեսած ու ապրած երկու հակադիր աշխարհների մասին։ Հետո նա պատասխանեց անասնապահների բազմաթիվ հարցերին։

Զրույցն ավարտվեց։ Սկսվեց գեղարվեստական-երաժշտական մասը։ Հաջողությամբ հանդես եկավ Ս. Ավետիսյանը, որը կարդաց մի շարք երգիծական բանաստեղծություններ։ Ջերմությամբ ընդունվեցին ագիտկուլտբրիգադի անդամներ Է. Խաչատրյանի, Մ. Սահակյանի, Ջ. Միրզոյանի ելույթները, որոնք հաջողությամբ կատարեցին ՍՍՌՄ ժողովուրդների երգերն ու պարերը։ Հուզմունքով ընդունվեց Ժ. Մայիլյանի կատարած հայկական ժողովրդական երգերը։

Համերգից հետո անասնապահները դիտեցին հենց տեղում կազմակերպված, իրենց աշխատանքի մասին շատ բան պատմող ֆոտոստենդը, որը խնամքով պատրաստել էր ագիտկուլտբրիգադի լուսանկարիչ Բ. Գյուլնազարյանը։ Ֆոտոստենդում հատուկ տեղ էր հատկացված առաջավոր կթվորուհիներ Ա. Գրիգորյանի և Ռ. Սարդարյանի աշխատանքի փորձին։ Նրանք մտել են սոցիալիստական մրցության մեջ և պարտավորվել տարեկան առաջադրանքը կատարել հոկտեմբեր ամսին։

Ֆոտոստենդը պատմում է առաջավոր անասնապահ Շ. Արամյանի մասին, որը իրեն վստահված 87 գլուխ կովերի խնամքը բարելավելու միջոցով հասել է լուրջ հաջողության։ Անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի նրա խնամած յուրաքանչյուր կովի կաթնատվությունը ավելացել է 125 լիտրով։ Ֆոտոստենդը պատմում է նաև անասնապահության բնագավառի աշխատողներ Հ. Գուլակյանի, Լ. Սարհադյանի, Ս. Աբազյանի և ուրիշների աշխատանքի մասին։

Ագիտկուլտբրիգադի անդամները անասնապահների համար կարդացին դասախոսություններ պարտիայի Կենտկոմի հունիսյան պլենումի նյութերի մասին, միջազգային դրության վերաբերյալ։ Հատուկ դասախոսություն կազմակերպվեց նաև Իջևանի արտադրական վարչության գյուղատնտեսության զարգացման հիմնական խնդիրների մասին։

Ագիտկուլտբրիգադը հետաքրքիր զրույցներ կազմակերպեց երեք պետությունների Մոսկվայում կնքված պայմանագրի մասին։ Այդ զրույցների ժամանակ ա-

նասնապահները գոհունակությամբ էին խոսում սովետական կառավարության խաղաղասիրական քաղաքականության մասին, խոստանում ավելի լավ աշխատել, ավելի շատ և որակով անասնապահական մթերքներ արտադրել։ Անասնապահները վրդովմունք էին հայտնում չինական ղեկավարների բռնած դիրքի նկատմամբ։

Եվ այսպես 5 օր անասնապահների մոտ մնալուց հետո ագիտկուլտբրիգադի անդամները վերադարձան Իջևան։ Ագիտկուլտբրիգադը եղել է նաև Սևքարի, Լալիգյուղի, Ենոքավանի և մյուս տնտեսությունների ամառանոցներում։

Կ. ԽՈՋՈՅԱՆ

ՄԵԹՈԴԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

## ԻՆՉՊԵՍ ԱՆՑԿԱՑՆԵԼ ԶՐՈՒՅՑ «ՍԵՐ ԵՎ ՀԱՐԳԱՆՔ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆԿԱՏՄԱՄԲ» ԹԵՄԱՅՈՎ

Զրույցի սկզբում ագիտատորը ունկնդիրներին պատմում է այն մասին, թե ինչպես պարտիան կոմունիստներին, բոլոր աշխատավորներին սովորեցնում է, որ կոմունիզմը և աշխատանքը անբաժան են։ Խոսելով կոմունիզմի մասին, Վ. Ի. Լենինը իր հռչակավոր «Մեծ նախաձեռնություն» աշխատության մեջ նշում է, որ «Կոմունիզմն սկսվում է այնտեղ, որտեղ երևան է գալիս շարքային բանվորների անձնվեր, ծանր աշխատանքը հաղթահարող հոգսը՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, պահպանելու յուրաքանչյուր փութ հացը, ածուխը, երկաթը և այլ մթերքներ, որոնք հասնում են ոչ թե անձնապես աշխատողներին և ոչ թե նրանց «մերձավորներին», այլ «հեռավորներին», այսինքն՝ ամբողջ հասարակությանը՝ տասնյակ և հարյուր միլիոնավոր մարդկանց, որոնք սկզբում միավորվում են մեկ սոցիալիստական պետության մեջ, հետո Սովետական ռեսպուբլիկաների Միության մեջ»։

Օգտագործելով Վ. Ի. Լենինի մեկ ուրիշ աշխատությունը, ինչպես, օրինակ, «Սովետական իշխանության հերթական խնդիրները», ագիտատորը կարող է ունկրնդիրների ուշադրությունը բևեռել այն հանգամանքի վրա, որ նա նոր կարգերի հաղթանակի համար գլխավորն ու վճռականը համարել է աշխատանքի ամենաբարձր արտադրողականության նվաճումը։



«Կոմունիզմը,— ասել է Վ. Ի. Լենինը,— կամավոր, գիտակից, միավորված, առաջավոր տեխնիկա օգտագործող բանվորների աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է, կապիտալիստականի համեմատությամբ»։

Զրույցի այս մասում ագիտատորը պետք է օգտագործի ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի նյութերը և ունկնդիրներին պարզաբանի այն հանգամանքը, որ աշխատանքի արտադրողականության բարձրացումը համաժողովրդական գործ է, որին կարելի է հասնել աշխատանքի նկատմամբ անսահման սեր և հարգանք ունենալու դեպքում։ Անհրաժեշտ է ունկնդիրներին հիշեցնել ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշման այն մասը, որտեղ ասված է, որ պարտիայի, սովետների, արհմիությունների, կոմերիտմիության գաղափարական աշխատանքի ուղն ու ծուծը պետք է կազմի յուրաքանչյուր սովետական մարդու մեջ հանրօգուտ աշխատանքի նկատմամբ սեր ու հարգանք դաստիարակելը։ Յուրաքանչյուր ունկնդիր, ամեն մի աշխատավոր պարզ ու հստակ պատկերացում պետք է ունենա այն մասին, որ ինչ ստեղծված է մեր երկրում, ստեղծված է ժողովրդի անձնվեր աշխատանքով, աշխատանքը բոլոր մարդկանց կյանքի ու բարօրության աղբյուրն է, հասարակության առաջադիմության ու ծաղկման գրավականը։ Ընկ. Ն. Ս. Խրուշչովի պատկերավոր խոսքերով՝ «աշխատանքի մեջ են բացահայտվում մարդկանց ընդունակությունները ու տաղանդները, մարդու հանճարը, աշխատանքն է մարդկության անմահությունը»։

Հիշված թեմայով զրույցը ավելի նպատակասլաց կլինի, եթե ագիտատորը հանգամանորեն ունկնդիրներին պատմի նաև Մոսկվայի «Դինամո» գործարանի փականագործների բրիգադիր Յուրի Կուդրյավցևի կյանքի ու աշխատանքի նշանաբանի մասին, որ նա մշակել է սեփական նախաձեռնությամբ (տպագրված ՍՄԿԿ Կենտկոմի «Ագիտատոր» ամսագրի այս տարվա 14-րդ և ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժնի «Ագիտատորի բլոկնոտ»-ի 17-րդ համարներում)։

Ավարտելով զրույցի այն մասը, որտեղ ագիտատորը պարզաբանում է, որ կոմունիզմը և աշխատանքն անբաժանելի են, նա ունկնդիրներին պետք է պատմի սովետական ժողովրդի, ինչպես նաև մեր ռեսպուբլիկայի աշխատավորների աշխատանքային սխրագործությունների մասին։ Նա հանգամանորեն պետք է խոսի այն

մասին, թե ինչպես պարտիան մեծ կարևորություն է տալիս կոմունիստական աշխատանքի շարժման հետագա զարգացմանը, որի մեջ, ինչպես նշեց ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը, օրգանապես զուգորդվում են աշխատանքի բարձր արտադրողականության համար, նոր տեխնիկային տիրապետելու համար մղվող պայքարը, գիտելիքների ձգտումը, մարդկանց նոր փոխհարաբերությունները, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի հաստատումը կյանքում։

Զրույցի այս մասում ագիտատորը ունկնդիրներին կարող է պատմել կոմունիստական աշխատանքի մեծ հաջողությունների մասին։ Նա նրանց պետք է հիշեցնի, որ կոմունիստական աշխատանքի շարժման մասնակիցները, ինչպես ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը, այժմ արդեն ոչ միայն ապագայի հետախույզներ են, այլև նրանք կոմունիզմ կառուցողների իսկական գվարդիան են։ Այդ շարժումը նպատակ ունի ստեղծել կոմունիզմի նյութատեխնիկական բազա, նպաստել նոր մարդու, կոմունիզմ կառուցող մարդու ձևավորմանը, որի նշանաբանն է՝ «Սովորել աշխատել և ապրել կոմունիստաբար»։

Մեր երկրում կոմունիստական աշխատանքի մրցությանը մասնակցում են 23 միլիոնից ավելի աշխատավորներ։ Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի պատվավոր կոչման համար պայքարում են ավելի քան 37 հազար գործարան, ֆաբրիկա, էլեկտրակայան, հանքահոր, կառույց և այլն։ Երկու հազարից ավելի ձեռնարկություններ և կառույցներ, որոնք միավորում են չորս միլիոն աշխատողներ, արդեն նվաճել են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչում։

Ուրախալի է իմանալ, որ մեր երկրում կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար մրցում են մեկ միլիոնից ավելի քիմիագործներ և նավթագործներ, երկու միլիոն մետալուրգներ, երեք միլիոն մեքենաշինարարներ, էլեկտրաարդյունաբերության և էլեկտրակայանների շուրջ երկու միլիոն աշխատողներ։

Ագիտատորը իր զրույցը հարստացնելով այս և նման հետաքրքիր փաստական տվյալներով, որոնք ցույց են տալիս կոմունիստական աշխատանքի մրցության լայն թափը մեր երկրում, նա միաժամանակ օգտագործում է մեր ռեսպուբլիկայի առօրյայից վերցված տեղական փաստեր։

Միայն մեր ռեսպուբլիկայում կոմունիստական աշ-



խատանքի շարժման մեջ ընդգրկված են ավելի քան 130 հազար աշխատավորներ, 138 ձեռնարկություններ, 5.672 բրիգադներ։ Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանը և Շահումյանի շրջանի տրիկոտաժի ֆաբրիկան նվաճել են կոմունիստական աշխատանքի բարձր կոչումը։

Կոմունիստական աշխատանքի բարձր կոչում է շնորհվել 1.349 բրիգադայի։ Այժմ 32.000 բանվորներ, ծառայողներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ պայքարում են կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման համար։ Նրանցից արդեն 7.372 հոգի կրում են այդ պատվավոր կոչումը։ Ռեսպուբլիկայում կոմունիստականի կոչման համար պայքարող 829 ցեխերի, ֆերմաների, բաժինների, տեղամասերի կոլեկտիվներից 160-ը արժանացել է այդ պատվին։

Ագիտատորը ունկնդիրներին պատմելով սովետական ժողովրդի աշխատանքային քաջագործությունների մասին, նա միաժամանակ պետք է պարսավանքի ենթարկի նրանց, ովքեր ազնվաբար չեն աշխատում, չեն կատարում իրենց քաղաքացիական պարտքը։ «Այն մարդը,— ասված է ՍՄԿՊ ծրագրում,— որը հասարակությունից որևէ բարիք ստանալով, չի մասնակցում աշխատանքի՝ ձրիակեր է և ուրիշի հաշվին ապրող»։

Այնուհետև ագիտատորը օգտվելով ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումներից ունկնդիրներին պատմում է պարտիայի այն մեծ պայքարի մասին, որ նա մղում է ամեն տեսակ քաղքենիների, անբանների, գողերի, պորտաբույծների դեմ, «որոնք փութեռանդությամբ վերցնում են ժողովրդական հարստության թասից, ոչինչ չտալով հասարակությանը»։

Խոսելով աշխատանքի նկատմամբ սեր դաստիարակելու մասին ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումին տված իր զեկուցման մեջ ընկ. Լ. Ֆ. Իլյիչովը նշեց, որ մեր ժողովուրդը պայքարել է ու կպայքարի նրանց դեմ, ովքեր սիրում են ոչինչ չարտադրել, բայց լավ սպառել, այն մարդկանց դեմ, ովքեր բերանացի են ասել և ամբողջովին օգտագործում են սովետական մարդկանց մեծ իրավունքներն ու առավելությունները, սակայն տառապում են հիշողության թուլությամբ, երբ խոսքը վերաբերվում է քաղաքացիական պարտականությունների և դրանցից առաջինը՝ աշխատելու պարտականության կատարման։ «Մեր պայմաններում,— ասում է ընկ. Լ. Ֆ. Իլյիչովը,— խոսքը այն մասին չէ, թե

ցանկանամ կաշխատեմ, ցանկանամ՝ պարապ կըթրեմ, մեր կյանքը, նրա օրենքները այդպիսի ընտրության իրավունք չեն տալիս։ Աշխատանքը կոնստիտուցիոն պարտականություն է, քաղաքացիական պարտք։ Ով չի կատարում այն, նա չի կարող նաև սովետական քաղաքացու իրավունքների, առավելությունների հույս ունենալ»։

Զրույցի այս մասում ագիտատորը պարզաբանում է, որ այժմ խնդիր է դրվում սահմանել այնպիսի կարգ, որ արձակուրդ ստանալու, ուղեգրեր ձեռք բերելու, բնակարան ստանալու առավելություններ ունենան նախ և առաջ նրանք, ովքեր լավ են աշխատում, և ընդհակառակը մասամբ կամ առհասարակ բարիքներից զրկել չվողներին, անբաններին, լոդրերին։ Հետևաբար մեր երկրում ով լավ է աշխատում, նա շատ է ստանում, ով վատ է աշխատում, նա քիչ է ստանում։

Ագիտատորը ունկնդիրներին պետք է պատմի այն մասին, թե ինչպես դեռևս ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումում ընկ. Ն. Ս. Խրուշչովը խնդիր դրեց, որ հարկավոր է խստագույն վերահսկողություն հաստատել աշխատանքի չափի և սպառման չափի նկատմամբ։

Ընկ. Ն. Ս. Խրուշչովի առաջարկությունը արժանացավ սովետական ամբողջ ժողովրդի ջերմ հավանությանը։

Զրույցի վերջում ագիտատորը պետք է խոսի անցյալի մնացուկների, կապիտալիզմի մնացուկների դեմ, անբանների, լոդրերի, գռփողների, չվողների, հարբեցողների, խուլիգանների դեմ մղվող պայքարում ունկնդիրների անելիքների մասին։ Հիշեցնելով նրանց, որ մեզանից յուրաքանչյուրի սրբազան պարտքն է ամրապնդել աշխատանքային կարգապահությունը ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում և ամենուրեք, մարդկանց մեջ կոմունիստական վերաբերմունք զարգացնել աշխատանքի և հանրային արտադրության նկատմամբ, անսահման սեր և հարգանք ունենալ դեպի աշխատանքը։ Ամեն մի ունկնդիր հստակ պատկերացում պետք է ունենա այն մասին, որ միայն իր համառ աշխատանքով, ամբողջ ժողովրդի աշխատանքով կարելի է կերտել կոմունիզմը, կառուցել ծաղկող հասարակություն։

Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ



# ԴԵՊԻ ՀԿՊ XXIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

*(Թվեր և փաստեր)*

**Մոտենում է հայ ժողովրդի կյանքում նշանավոր իրադարձության օրը: 1963 թվականի դեկտեմբերի 17-ին Երևանում բացվելու է Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարը: Ի պատիվ առաջիկա համագումարի մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ջանք չեն խնայում ստանձնած պարտավորությունները բարձր ցուցանիշներով կատարելու համար։**

ԵՐԵՎԱՆԻ Ս. Մ. Կիրովի անվան գործարանի փառաբանված կոլեկտիվը համախառն արտադրանքի թողարկման 8 ամսվա պլանը կատարել է 104,4 տոկոսով։ Կիրովցիները խոստացել են համագումարի բացման օրը՝ 1963 թվականի դեկտեմբերի 17-ին կատարել տարեկան պլանը։

ԵՐԵՎԱՆԻ կաբելի գործարանի կոլեկտիվը, որը պայքարում է կոմունիստականի բարձր կոչմանն արժանանալու համար, 8 ամսվա պլանը կատարել է ժամկետից շուտ և 103,7 տոկոսով։ Գործարանը երկրին տվել է մեծ քանակությամբ արտապլանային արտադրանք։

ԳՈՐԾԱՐԿՎԵՑ Երևանի ջերմաէլեկտրակայանի երրորդ ագրեգատը, որը ունի 50 հազար կիլովատ հզորություն։ Այդ կառուցողների հիանալի նվերն է Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարին։

ԵՐԵՎԱՆԻ ժամացույցի գործարանը անցած 8 ամիսների համախառն արտադրանքի պլանը 103,5-ի դիմաց կատարեց 104,5 տոկոսով։ Գործարանը թողարկել է 170 հազար ռուբլու արտապլանային արտադրանք՝ հայրենիքին տալով 19 հազար 255 հատ ավելի ժամացույց։

ԵՐԵՎԱՆԻ Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի աշխատողները այժմ մեծ խանդավառությամբ պայքարում են տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 17-ին և ոչ մի խոտան չարտադրել։

ԵՐԵՎԱՆԻ շոգեքարշային դեպոյի կոլեկտիվը ընթացիկ տարվա 8 ամիսների առաջադրանքները կատարել է 105 տոկոսով։ Նախատեսված 255 կիլոմետրի փոխարեն կոլեկտիվը ծանրաքարշ գնացքների օրական միջին վազքը հասցրել է 283 կիլոմետրի։ Տնտեսվել է 711 տոննա վառելանյութ։

ԵՐԵՎԱՆԻ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը յուրացրեց «ԴԱԶՕ—19» տրամաչափի խոշոր էլեկտրական մեքենայի արտադրության տեխնոլոգիան։ Կոլեկտիվը

պարտավորվել է մինչև տարվա վերջը թողարկել մի քանի տասնյակ այդպիսի մեքենա։

ԵՐԵՎԱՆԻ հիդրոպոմպերի գործարանի կոլեկտիվը անցած ութ ամսվա պլանը կատարել է 106,7 տոկոսով և պարտավորվել է տարեկան պլանը կատարել ժամկետից շուտ։

ԿԻՐՈՎԱԿԱՆԻ Ալ. Մյասնիկյանի անվան կոմբինատի աշխատողները ժամկետից 4 օր շուտ կատարեցին համախառն արտադրանքի 8 ամսվա առաջադրանքը։ Նրանք այժմ պայքարում են տարեկան պլանը կատարել ժամկետից շուտ։

ՀԻԱՆԱԼԻ հաջողությունների է հասել Ղափանի պղնձահանքային կոմբինատի № 1—2 հանքի լեռնագործների կոլեկտիվը, որը պայքարում է կոմունիստական աշխատանքի կոչման համար։ Կոլեկտիվը ձգտում է յոթնամյակի 5-րդ տարվա պլանը կատարել դեկտեմբերի 17-ին։

ԼԵՆԻՆԱԿԱՆԻ միկրոէլեկտրաշարժիչների գործարանը ժամկետից տասն օր շուտ կատարելով ութ ամսվա պլանը, երկրին տվել է 170 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք։ Այժմ կոլեկտիվը ձգտում է ի պատիվ համագումարի տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 10-ին։

ԲԱՍԱՐԳԵՉԱՐԻ արտադրական վարչության Ծովակ գյուղի կոլտնտեսությունը գերակատարել է հացահատիկի վաճառքի պլանը, պետությանը հանձնված է 1.440 ցենտներ հացահատիկ։ Այդ նույն կոլտնտեսությունը երկրին տվել է 390 ցենտներ միս, 1.250 ցենտներ կաթ, 38 հազար ձու։

ՍԻՍԻԱՆԻ արտադրական վարչության Հացավանի կոլտնտեսությունը կուտակել է մեկ ու կես տարվա անասնակեր։ Կոլտնտեսությունում արդեն հավաքված է 390 տոննա խոտ։ Պատրաստված է 390 տոննա սիլոսային զանգված։

ԱՆԻԻ անասնապահական սովխոզը գերակատարել է պետությանը հացահատիկ վաճառելու պլանը։ Պետությանն է հանձնվել 36 հազար փութ հացահատիկ։ Ի պատիվ համագումարի, սովխոզի աշխատավորները պարտավորվել են պետությանը հանձնել ևս 60 հազար փութ հացահատիկ։

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆԻ արտադրական վարչության Սարունչիի գյուղի կոլտնտեսությունը 870 ցենտների դիմաց պետությանը վաճառել է 900 ցենտներ ցորեն։

ԵՂԵԳՆԱՁՈՐԻ արտադրական վարչության Շահումյանի անվան սովխոզը պետությանը հացահատիկ վաճառելու պլանը գերակատարել է 110 ցենտներով։

ԷՋՄԻԱԾՆԻ արտադրական վարչության Սամաղար գյուղի կոլտնտեսականները յուրաքանչյուր հեկտարից, նախատեսված 350-ի փոխարեն հավաքել են եգիպտացորենի 450-500 ցենտներ կանաչ մասսա։



ԿՐԱՍՆՈՍԵԼՍԿԻ արտադրական վարչության Շորժա գյուղի կոլտնտեսությունը պատվով կատարեց իր պարտքը հայրենիքի հանդեպ, պետությանը վաճառելով 3125 փութ հացահատիկ։ Կոլտնտեսությունում խոտի կուտակման պլանը կատարված է 220, սիլոսինը՝ 200 տոկոսով։

ՍՏԵՓԱՆԱՎԱՆԻ արտադրական վարչության Լոռու տոհմաբուծարանում ճանաչված կթվորուհի է Գյուլիստան Մամեդովան, որը իր խնամած կովերի կաթնատվությունը հասցրել է 4.300—4.500 կիլոգրամի։

ԱՐՏԱՇԱՏԻ արտադրական վարչության Ջիմանի կոլտնտեսության ծխախոտագործները պլանով նախատեսված 102 տոննայի դիմաց պետությանը արդեն վաճառել են 105 տոննա ծխախոտ։ Նրանք պայքարում են մինչև սեզոնի վերջը պետությանը վաճառված հումքի քանակը հասցնել 200 տոննայի։

Ի պատիվ ՀԿՊ XXIII համագումարի ռեսպուբլիկայում բուռն թափով ծավալվում է սոցիալիստական մրցություն, որի նպատակն է երկրին տալ ավելի շատ արդյունաբերական արտադրանք և գյուղատնտեսական մթերքներ։

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

# ՊԱՏՐԱՆՔԱՅԻՆ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆ

## Միջիմպերիալիստական հակասությունները սրվում են

Այս տարվա սկզբին կոնգրեսին ուղղած իր «Երկրի դրության մասին» ուղերձում Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտ Քենեդին, անդրադառնալով կապիտալիստական աշխարհի պետությունների միջև եղած փոխհարաբերություններին, պարծենկոտորեն հայտարարեց, որ նրանք, իբր թե «դեպի նպատակի, ուժի և քաղաքականության միասնություն են ընթանում գործունեության բոլոր ոլորտներում»։

Դժվար թե հնարավոր լիներ նման պնդման համար ավելի անհամապատասխան ժամանակ գտնել։ Կապիտալիստական աշխարհում ժամանակակից իրադրությունը բնութագրվում է որպես միջիմպերիալիստական տնտեսական, քաղաքական, ռազմական հարաբերությունների հենց ամենախիստ սրման շրջան՝ ետպատերազմյան ամբողջ ժամանակաշրջանում։ Այդ իր վառ արտահայտումն է գտնում իմպերիալիստական գլխավոր տերությունների՝ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի,

Արևմտյան Գերմանիայի, Ճապոնիայի շահերի աննախընթաց սուր բախումների մեջ՝ սպառման շուկաների, հումքի աղբյուրների, կապիտալների ներդրման ոլորտների համար մղած նրանց պայքարում։ Վերջին ժամանակները այդ պայքարը ավելի ու ավելի է փոխադրվում նաև ռազմա-քաղաքական ոլորտը։

Կյանքը լիակատար կերպով հաստատում է այն խոսքերի արդարացիությունը, որ Ն. Ս. Խրուշչովն ասել է պարտիայի XXII համագումարում ՍՄԿՊ ծրագրի մասին տված զեկուցման մեջ՝ «Իմպերիալիզմի լագերում,— ասել է նա,— օբյեկտիվորեն գործում և միահյուսվում են երկու տենդենց. մեկը դեպի նրա բոլոր ուժերի միավորումն ընդդեմ սոցիալիզմի, իսկ մյուսը՝ դեպի բուն իմպերիալիստական տերությունների հակասությունների, ինչպես նաև մի կողմից նրանց և, մյուս կողմից, կապիտալիստական աշխարհի մնացած պետությունների հակասությունների աճումը։ Միացյալ Նահանգներին չի հաջողվել և չի հաջողվի հաղթահարել այդ երկրորդ տենդենցը»։

## Շահերի չվերացվող երկպարակություն

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է և միջազգային հարաբերությունների պրակտիկան համոզիչ կերպով հաստատում է, որ սուր հակասությունները և փոխադարձ պայքարը օրգանապես հատուկ են իմպերիալիզմին։ Վ. Ի. Լենինը՝ բացառիկ խորությամբ է բացահայտել կապիտալիստական հասարակության հակասությունների գլխավոր աղբյուրը, ցույց տալով, որ այն գտնվում է հենց իր՝ մասնավոր սեփականատիրության սիստեմում, որն անխուսափելիորեն ծնում է զանազան կոնֆլիկտներ և շահերի բախումներ։ Իմպերիալիստական տերությունների միջև, նշում էր Լենինը, գոյություն ունի «...տնտեսական շահերի անլուծելի ամենախոր արմատներ ունեցող ներհակություն...» (Երկեր, հ. 31, էջ 585)։

Իմպերիալիզմի ժամանակաշրջանում տեղի է ունենում կապիտալիստական սիստեմին հատուկ բոլոր հակասությունների հատկապես ուժեղ սրում։ Իմպերիալիստական տերությունների միջև մղվող պայքարի վրա ավելի ու ավելի մեծ չափով է ներգործում մեր դարաշրջանի հիմնական հակասությունը՝ սոցիալիզմի և կապիտալիզմի միջև եղած հակասությունը։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո իմ-



պերիալիզմի սիստեմից Եվրոպայի և Ասիայի նոր լայնածավալ շրջանների անջատման հետևանքով, որոնցում ապրում է մոտ մեկ միլիարդ մարդ, համաշխարհային սոցիալիստական սիստեմի ստեղծման և աճի հետևանքով իմպերիալիստական գլխավոր տերությունների միջև խիստ կերպով սրվեց դեռևս նրանց վերահսկողության ներքո գտնվող վաճառահանման շուկաների, հումքի աղբյուրների, կապիտալների ներդրման ոլորտների համար մղվող պայքարը։ Իսկ որ կապիտալիզմի աշխարհը նեղ է դարձել, այդ մասին խոսում են այսպիսի տվյալներ։ Եթե 1919 թվականին իմպերիալիստական խոշոր տերությունները և նրանց գաղութները գրավում էին ամբողջ երկրագնդի մակերեսի 44,5 տոկոսը, որի վրա ապրում էր ազգաբնակչության 48,1 տոկոսը, ապա 1961 թվականին նրանց բաժինը կազմում էր մակերեսի միայն 13,7 տոկոսը և բնակչության 17,9 տոկոսը։

Սոցիալիզմի աշխարհը կապիտալիզմի աշխարհին նեղում է գլխավոր տեղամասում՝ նյութական արտադրության ոլորտում։ Համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ սոցիալիստական երկրների բաժինը 1957 թվականին եղած 30 տոկոսից ավելացել և 1962 թվականին հասել է մոտավորապես 37 տոկոսի։ Զարգացած կապիտալիզմի երկրների բաժինը նույն ժամանակաշրջանում 60 տոկոսից կրճատվել և հասել է մինչև 54 տոկոսի։ 1962 թվականին արդյունաբերական արտադրությունը սոցիալիստական երկրներում, 1961 թվականի համեմատությամբ, աճեց մոտավորապես 8 տոկոսով և 1957 թվականի համեմատությամբ՝ 72,4 տոկոսով, այն դեպքում, երբ զարգացած կապիտալիզմի երկրներում՝ (համապատասխանաբար) միայն 5 տոկոսով և 23 տոկոսով։

Գնալով ավելի ու ավելի նոր փաստեր են վկայում այն մասին, որ տեղի է ունենում իմպերիալիզմի ներքին և արտաքին բոլոր հակասությունների հետագա խիստ խորացում և սրում։ Այս լույսի տակ աբսուրդ և անհիմն է երևում Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների կողմից առաջ քաշված իրենց հատուկ կոնցեպցիան, որի համաձայն ժամանակակից աշխարհում հիմնական հակասություններն իբր թե այն հակասություններն են, որոնք կան մի կողմից ամերիկյան իմպերիալիստների և մյուս կողմից ոչ սոցիալիստական երկրների ժողովուրդների, հատկապես Ասիայի,

Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի ճնշված ժողովուրդների միջև. ինչպես նաև ամերիկյան և մյուս իմպերիալիստների միջև եղած հակասությունները։

Ինքնըստինքյան հասկանալի է, որ ոչ ոք երբեք չի ժխտել այդ հակասությունները և այն, որ դրանք սրվում են։ Սակայն դրանք հանդես բերել որպես հակասությունների հանգուցակետ ժամանակակից աշխարհում, ինչպես այդ անում են ՉԿՊ-ի տեսաբանները, նշանակում է ոչ միայն չհասկանալ համաշխարհային զարգացման հիմնական գիծը, այլև հեռանալ այն գլխավոր գործոնը ճիշտ հասկանալուց, որը պայմանավորում է միջիմպերիալիստական բոլոր հակասությունների խիստ սրումն ու խորացումը ժամանակակից փուլում։

Իմպերիալիստական լագերի սեղմվող սահմանների ներսում հատկապես ուժեղ կերպով է հանդես գալիս կապիտալիզմի անհավասարաչափ զարգացման օրենքի ներգործությունը։ Որպես դրա հետևանք վերջին տարիների ընթացքում նոր նշանակալից տեղաշարժեր տեղի ունեցան հիմնական կապիտալիստական տերությունների տնտեսական հզորության հարաբերակցություններում։ Իսկ այդ անխուսափելիորեն տանում է նրանց միջև կատաղի գոտեմարտերի։

Երկրորդ համաշխարհային պատերազմին հաջորդող առաջին տարիներին ԱՄՆ-ը հանդես էր գալիս կապիտալիստական աշխարհի բացարձակ հեգեմոնի դերում։ Սակայն հետագայում արագորեն համաշխարհային կապիտալիստական տնտեսության նախաբեմ առաջ քաշվեցին այնպիսի երկրներ, ինչպես Արևմտյան Գերմանիան, Ֆրանսիան, Իտալիան, Ճապոնիան։

Մեկը մյուսի ետևից սկսեցին երևան գալ իմպերիալիստական երկրների նոր հզոր տնտեսական միավորումներ (ի դեմս Եվրոպական տնտեսական համագործակցության (ԵՏՀ) կամ «Ընդհանուր շուկայի», որի կազմում մտնում են ԳՖՌ-ն, Ֆրանսիան, Իտալիան, Բելգիան, Հոլանդիան, և Լյուքսեմբուրգը. «Ազատ առևտրի եվրոպական միավորումը» (ԱԱԵՄ), որի կազմում են Անգլիան, Շվեդիան, Դանիան, Նորվեգիան, Շվեյցարիան, Ավստրիան և Պորտուգալիան)։ Նրանք կապիտալիստական աշխարհում ներգործության ոլորտների և շահերի վերաբաժանման հարց են դրել։

Արևմտյան Եվրոպայի կոնտինենտալ երկրների տնտեսական հարաբերական հզորության ուժեղացումը ԱՄՆ-ի դիրքերի վատացման հետ միասին կազմում է



միջիմպերիալիստական հակասությունների խիստ սրման հիմքը ժամանակակից փուլում։

## «Ներդաշնակության» փոխարեն՝ գզվռտոց

Իմպերիալիզմի քաղաքագետները և գաղափարախոսներն անդադրում պնդում էին, որ «Ընդհանուր շուկայի» կազմակերպմամբ և Եվրոպայի այսպես կոչված ինտեգրացիայի (միավորման) կուրսի կիրառմամբ իբր թե վրա կհասնի «խաղաղության դարաշրջանը» և «շահերի ներդաշնակություն» կապիտալիստական աշխարհում։ Իսկ իրականում այդ հանգեցրեց միջիմպերիալիստական հակասությունների նոր պոռթկման։

Եվրոպական տնտեսական համագործակցությունը («Ընդհանուր շուկայի» կազմակերպությունը) վերածվեց Ամերիկայի Միացյալ Նահանգների ու Անգլիայի լուրջ մրցակիցը համաշխարհային կապիտալիստական շուկայում։ 1961 թվականի արտաքին առևտրի ծավալով «Ընդհանուր շուկայի» երկրները մեծապես գերազանցեցին Ամերիկայի Միացյալ Նահանգներին, իսկ արտահանմամբ համարյա թե հավասարվեցին Ազգերի բրիտանական համագործակցությանը, որը հենվում է գաղութների ու դոմինիոնների ճյուղավորված սիստեմի վրա։

«Ընդհանուր շուկայի» ներսում առաջատար տեղ են գրավել ֆրանսիական և արևմտագերմանական մոնոպոլիաները, որոնք լուրջ վտանգ են ստեղծում Անգլիայի տնտեսական դիրքերին։ Անգլիայի ղեկավարության ներքո առաջ եկած տնտեսական միավորումը (Ազատ առևտրի եվրոպական ասոցիացիան) չկարողացավ, սակայն, դիմակայել «Ընդհանուր շուկայի» երկրների ճնշմանը։ Բնորոշ է, որ 1961 թվականին համաշխարհային կապիտալիստական արդյունաբերական արտադրության մեջ «Ընդհանուր շուկայի» բաժինը համարյա 7 տոկոսով գերազանցում էր ԱԱԵՄ-ի մասնակից երկրների համապատասխան բաժինը։ Ուստի ԱԱԵՄ-ի երկրները ստիպված կլինեն վերախմբավորել իրենց ուժերը, որպեսզի նոր մարտ տան «Ընդհանուր շուկայի» երկրներին։

## Պայքար ռազմական բլոկներում գլխավորելու համար

Իմպերիալիստական լագերի ներսում, և ամենից առաջ ԱՄՆ-ի ու Արևմտյան Եվրոպայի միջև տնտեսա-

կան ուժերի հարաբերակցության փոփոխությունը բնական է, որ չի կարող չանդրադառնալ այդ լագերի քաղաքական փոխհարաբերությունների վրա։ Գլխավոր իմպերիալիստական տերությունների միջև հատկապես լարված պայքար է ծավալվում ՆԱՏՕ-ի ռազմական բլոկի շրջանակներում։

Ներկայումս փաստորեն տենդենց է նկատվում այդ բլոկի ներսում ստեղծելու մեկուսի խմբավորում՝ Արևմտյան Գերմանիայի և Ֆրանսիայի ղեկավարությամբ։ Այդ իր արտահայտությունը գտավ սույն թվականի հունվարի 22-ին կնքված համագործակցության վերաբերյալ ֆրանս-արևմտագերմանական պայմանագրում։ Շատ բնորոշ է, որ Բոննը և Փարիզը պաշտոնապես հայտարարեցին, որ «Վեցյակի» մյուս բոլոր երկրները կարող են, իբր թե, միանալ ֆրանս-բոննական պայմանագրին։ Այս ամենը այն բանի ապացույցն է, որ Բոնն-Փարիզ «առանցքը» հղացվել է որպես արևմտաեվրոպական քաղաքական նոր դաշինքի միջուկ, դաշինք, որը հակադրվում է Արևմտյան Եվրոպայի ամերիկյան ղեկավարությանը։

Ամերիկացիները ձգտում են արևմտաեվրոպական երկրների վրա դնել ռազմական ծախսերի բեռը, այն ծախսերի, որոնք կապված են ՆԱՏՕ-ի միջուկային ուժեր ստեղծելու հետ, և միաժամանակ ինչ որ ձևով բավարարել Բոննի աճող պահանջը, որը ձգտում է որքան կարելի է շուտ հասնել միջուկային զենքին։ Այդ նպատակով ԱՄՆ-ն այս տարվա փետրվարի կեսերին առաջ քաշեց ՆԱՏՕ-ի միջուկային ուժերի ստեղծման նոր վարիանտ, որը նախատեսում է «Պոլարիս» հրթիռների տեղակայում սովորական վերջրյա նավերի վրա։

Առաջարկելով ստեղծել միջուկային ուժեր, որոնց հիմքը մոտակա տարիներին պետք է լինի ամերիկյան հրթիռա-միջուկային զենքը, ԱՄՆ-ը ցանկանում է այդպիսով պահպանել այդ զենքի վրա ունեցած իր մենաշնորհը ՆԱՏՕ-ում։ Միաժամանակ նա ուզում է մի որոշ չափով նաև բավարարել միջուկային զենքի նկատմամբ իր դաշնակիցների աճող պահանջները։

Նման քաղաքականությունը չի կարող չտանել դեպի հակասությունների խիստ սրում ՆԱՏՕ-ի ներսում։ Ֆրանսիան առաջվա նման կատեգորիկ կերպով հրաժարվում է մասնակցել բազմակողմանի միջուկային ուժերին։ ՆԱՏՕ-ի փոքր երկրները նույնպես կասկածամտորեն են տրամադրված։ Նրանք ոչ առանց հիմքի



ենթադրում են, որ այդպիսի երկրների բախտը կորոշվի առանց իրենց։ ՆԱՏՕ-ում գտնվող երկրներին չի կարող ուրախացնել նաև այն վիթխարի լրացուցիչ ֆինանսական բեռը, որն ընկած է իրենց վրա միջուկային ուժերի ստեղծման կապակցությամբ։

Այս տարվա մայիսին Օտտավայում տեղի ունեցավ ՆԱՏՕ-ի խորհրդի հերթական սեսիան։ Իր պարտնյորների վրա ԱՄՆ-ի խիստ ճնշման հետևանքով սեսիան որոշեց սկսել ՆԱՏՕ-ի միացյալ միջուկային ուժերի ստեղծումը։ Դրա սկիզբը կհանդիսանա այսպես կոչված միջդաշնակցային միջուկային ուժերի ձևավորումը։ ՆԱՏՕ-ի շրջանակներում հիմնվում է միջուկային ուժերի նոր հրամանատարություն ազգային միավորումներից, որի իրավասությանը պաշտոնապես հանձնվում են «Պոլարիս» հրթիռներով զինված ամերիկյան երեք սուզանավեր, անգլիական 252 ռմբակոծիչներ, որոնք կարող են միջուկային զենք կրել, ինչպես նաև ՆԱՏՕ-ի մասնակից ութ այլ երկրների (այդ թվում Արևմտյան Գերմանիայի) տակտիկական ավիացիան, որը հագեցված կլինի ԱՄՆ-ի ատոմային զենքով։ ՆԱՏՕ-ի միջդաշնակցային ուժերի ստեղծումով ԱՄՆ-ը ցանկանում է իր վերահսկողությանը ենթարկել ՆԱՏՕ-ի մասնակից մյուս երկրների արդեն առկա միջուկային պոտենցիալը և ուժեղացնել նրանց ռազմական կախվածությունը։

***

Այսպիսիք են ԱՄՆ-ի և Արևմտյան Եվրոպայի միջև փոխհարաբերությունների բնագավառում եղած իմպերիալիստական հակասությունների հիմնական, գլխավոր արտահայտությունները։ Այդ, իհարկե, չի նշանակում, որ միջիմպերիալիստական հակասությունները սպառվում են վերը թվարկված մոմենտներով և սահմանափակվում են երկրագնդի՝ նշված շրջաններով միայն։ Նրանք իրենց արտահայտություն են գտնում նաև այլ ոլորտներում ու աշխարհի այլ շրջաններում։

Խոսելով իմպերիալիստների միջև եղած հակասությունների մասին, լուրջ սխալ կլիներ, իհարկե, ուշք չդարձնել նրանց «միավորիչ» ձգտումներին, որ նրանք ունեն համաշխարհային սոցիալիստական սիստեմի դեմ մղած իրենց համատեղ պայքարում։ Կապիտալիզմի հետ համաշխարհային տնտեսական մրցության մեջ սոցիալիզմի նոր հաջողությունները, գաղութատիրական սիստեմի կործանումը իմպերիալիստներին հրում են և

կհրեն միավորելու իրենց ուժերը սոցիալիստական պետությունների, խաղաղության ուժերի և առաջադիմության դեմ պայքարելու համար։

Իմպերիալիստների զանազան միավորումները լուրջ վտանգ են ներկայացնում խաղաղասեր ժողովուրդների համար։ Դրանք ուղղված են սոցիալիստական երկրների դեմ պատերազմ նախապատրաստելուն, բանվորական շարժման դեմ պայքարելուն, Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը ճնշելուն։ Դրա համար էլ իմպերիալիստների զանազան պլանները, տակտիկական պրիոմները և գործողությունները ժողովրդական մասսաների ավելի ու ավելի վճռական դիմադրությանն են հանդիպում։ Խաղաղասեր ժողովուրդները բարձրացնում են իրենց զգոնությունը, ուժեղացնում են պայքարն ընդդեմ նոր պատերազմի իմպերիալիստական հրձիգների, հանուն խաղաղության ամրապնդման։

Մեր ժամանակներում, երբ աճում և ամրապնդվում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, ընդլայնվում է ռևոլյուցիոն շարժումը կապիտալի երկրներում, նորանոր հաղթանակներ է ձեռք բերում ազգային-ազատագրական շարժումը, իմպերիալիզմն արդեն չի կարող ժողովուրդներին փաթաթել իր պայմանները և իր կամքը թելադրել ինչպես նախկինում։ Համաշխարհային թատերաբեմում ուժերի հարաբերակցությունը անշեղորեն փոխվում է սոցիալիզմի օգտին։

Բ. ԽԱԼՈՅԱ

Պատմական գիտությունների թեկնածու

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Կոմունիստական բարոյականությամբ օժտված նոր մարդու դաստիարակությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երիտասարդության միությունների խնդիրները, Երկեր, հատ. 31, էջ 343—366, Հայպետհրատ, 1952։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — Մարքսիզմ-լենինիզմը մեր դրոշն է, մեր



մարտական զենքը, ճառ, արտասանած ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 30-ի համարում։

Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ — Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրները, զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 19-ի և 20-ի համարներում։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, ընդունված ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Լ. Ֆ. Իլյիչովի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 23-ի համարում։

## 2. Ժամանակի կորուստը բերքի կորուստ է, ժամանակին նավաքենք բերքը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Պետությանը վաճառվող հացահատիկի ավելացման ապարեզում Կրասնոդարի երկրամասի կոլտնտեսությունների ու սովխոզների սոցիալիստական պարտավորությունների մասին, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 25-ի համարում։

Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի գյուղատնտեսության ղեկավարման բյուրոյում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 23-ի համարում։

Հացը ժողովրդական հարստություն է, «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 24-ի առաջնորդող հոդվածը։

## 3. Ապահովենք մսամթերքների և կաթնամթերքների պետական պլանների կատարումը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հանրային հոտն ապահովել կերի առատ պաշարով, ՀԿՊ Կենտկոմում և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 12-ի համարում։

Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի գյուղատնտեսության ղեկավարման բյուրոյում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 23-ի համարում։

Անասնապահների անհետաձգելի հոգսերը, «Պրավդա» թերթի 1963 թվականի հուլիսի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 19-ի համարում։

## 4. Յուրաքանչյուր բանվոր պետք է ձգտի հավասարվել առաջավորներին և աշխատել բարձր արտադրողականությամբ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ — Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, Երկեր, հատ. 27, էջ 306—310, Հայպետհրատ, 1951։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — Ամեն կերպ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, էջ 75—78, Հայպետհրատ, 1961։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — Կոմունիստական հասարակական հարաբերությունների զարգացումը և նոր մարդու ձևավորումը, *ՍՄԿՊ ծրագրի մասին պարտիայի XXII համագումարում տված զեկուցումից, էջ 96—123, Հայպետհրատ, 1961։*

## 5. Կոմունիզմը և խաղաղությունը անբաժանելի են

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ* — Խաղաղություն ժողովուրդներին, *Երկեր, հատ. 26, էջ 57—60, Հայպետհրատ, 1951։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի բաց նամակը Սովետական Միության պարտիական կազմակերպություններին, բոլոր կոմունիստներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 16-ի համարում։*

Սովետական կառավարության հայտարարությունները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 4-ի և 22-ի համարներում։*

*ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ԱՆՎԱՆ*
*ՔԱՂԱՔԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ*
*ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ՏՈՒՆ*

---

**Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ**

---

**Отдел идеологической работы ЦК КП Армении**

**АГИТАТОРИ БЛОКНОТ**

**№ 18**

**1963**

*ՎՖ 12233* *Պատվեր 851* *Տիրաժ 8025*

---

*Հանձնված է արտադրության 11/IX 1963 թ.*
*Ստորագրված է տպագրության 18/IX 1963 թ.*

---

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 8 կոպ.։*